# ԼԵՆԻՆԸ ՊՈՐՈՆԻՆՈՅՈՒՄ

ՎԱՀԱԳՆ ԿԱՐԵՆՑ

Նկ. ՎԱՉԷ ԹԵՎԱՆՅԱՆԻ

Պորոնինոն՝ մի խուլ գյուղակ,
Անտառի մեջ խոր ու մթին,
Այնտեղ մի պարզ, մի հին տնակ
Պատսպարեց առաջնորդին...

Այդ հեռավոր Լեհաստանում,
Շուրջը թեև՝ թավիշ անտառ,
Նա երբեք չէր հանգստանում,
Նա աշխատում էր անդադար:

Իհարկե, նա կուզեր շրջել
Եվ անտառից հավաքել սունկ,
Ու թափառել, ու անրջել
Լճակների ափին լազուր,

Ընկերանալ ծկնորսներին,
Հովիվներին կարդալ թերթեր,
Լսել երգը թռչունների,
Անտառի մեջ սուլել թեթև:

Բայց աշխատում էր անդադար,
Գրում էր նա, անվերջ կարդում,
Հազվադեպ էր գնում անտառ,
Միայն մեկ-մեկ փայտ էր ջարդում:

Միայն մեկ-մեկ առավոտ շուտ
Նստում էր հին մի հեծանիվ,
Դեպի մոտիկ փոստն էր քշում՝
Անտառամերձ կայարանի...

Մանուկները այդ գյուղակի
Լա՛վ գիտեին Լենին քեռուն,



Եվ նրա հետ հաճախակի
Լինում էին այդ անտառում:

Նա նրանց հետ մտերմորեն
Խոսք էր բացում ամեն ինչից,
Ծիծաղում էր ու լեհերեն
Արտասանում Միցկևիչից:

Մանուկները սիրում էին
Կատակասեր քեռուն բարի,
Երբ նա նստում էր հեծանիվ,
Կանգնում էին ճանապարհին.

— Ու՞ր եք այդպես դուք շտապում,
Փոստատարը շուտո՞վ կգա, —
Ու ետևից նրա իսկույն
Վազում էին արագաքայլ:

Վազում էին, վազում, սակայն,
Չէին հասնում Լենին քեռուն,
Որ մի շաղոտ շավիղ ընկած,
Իսկույն կորչում էր անտառում:

Չգիտեին, որ անհամբեր
Նա սպասում է լուրերի,
Ազատության երջանկաբեր
Արշալույսին Հոկտեմբերի...

Եվ նրանք ի՞նչ իմանային,
Մանուկները այդ գյուղակի,
Որ լույսն իրենց ապագայի
Այդ շավիղից պիտի ծագի...

## ՈՐՏԵՂ Է ԲԱՏԱՎԻԱՆ ԵՎ ԹԵ ՀՅՈՒՐԵՐԻՆ ԻՆՉՈՎ ԿԵՐԱԿՐԵՑԻՆ ԻՆԴՈՆԵԶԻԱՅՈՒՄ

ԽԱԺԱԿ ԳՅՈՒԼՆԱԶԱՐՅԱՆ

Նկ. ՎԱՉԷ ԹԵՎԱՆՅԱՆԻ

*Անցել է երեսունյոթ տարի, բայց հիմա էլ, երբ նայում եմ աշխարհի քարտեզին, ամոթից կարմրում եմ: Ահա Ավստրալիան, հսկայական մի աշխարհամաս՝ Կամբերա, Մելբուռն, Սիդնեյ քաղաքներով: Եվ ահա Ինդոնեզիան, զարմանալի կղզիների հանրապետությունը՝ Ջակարտա մայրաքաղաքով, որը մինչև 1950 թվականը կոչվում էր Բատավիա:*

* * *

Ճամբարում մի լավ սովորություն ունեինք, որքան հիշում եմ, նախաձեռնությունը բազավար[1] ընկեր Մուշեղինն էր։ Ամեն օր հայտարարում էր մի երկրի անուն։ Այսօր Անգլիայի օրն է, վաղը՝ Չինաստանի, մյուս օրը՝ Իտալիայի և այլն։ Անգլիայի օրը հերթապահ ջոկատը ուտելիքը մատուցում էր անգլիական ձևով։ Երեկոյան խարույկի շուրջն ստուգվում էր, թե ով ինչ գիտի Անգլիայի մասին։ Մեկը Շեքսպիրի դրամաներն էր հիշում, մեկը պատմում էր Անգլիայի բանվորների պայքարի մասին, մեկը հիշում էր ինչ-որ գիտնականի խոսքերը. «Ոչխարները կերան մարդկանց»։ (Դե, դա պատմությունից է, դուք, իհարկե, կիմանաք)։

Իրանի օրը հերթապահ ջոկատը չամիչով փլավ էր մատուցում։ Երեկոյան մեկն արտասանում էր Օմար-Խայամի քառյակները, մեկը պատմում էր Իրանի մայրաքաղաք Թեհրանի մասին, ասում էր, թե ինչքան բնակիչ ունի, ճարտարապետական նշանակություն ունեցող ինչ կառույցներ, կամուրջներ, ճանապարհներ... թե Իրանում ինչ պտուղներ են աճում, ինչ սովորություններ կան, ինչպես են բարևում, ինչպես են աշխատում, ինչպես են տխրում և ուրախանում մարդիկ։

Այս բոլորն իմանալը հեշտ չէր։ Դրա համար հարկավոր էր գրքեր կարդալ, թվեր հիշել, ծանոթանալ երկրի, քարտեզին, պատմությանը, արվեստին... Մի խոսքով...

Եվ բոլորը պատրաստվում էին։ Երևանի գրադարաններից ընկեր Մուշեղն ամեն շաբաթ տասնյակ գրքեր էր բերել տալիս, և, իրար առաջ կրաբելով, երեխաները ագահորեն կլանում էին պատմություն, աշխարհագրություն, գեղարվեստական գրականություն։

Երեկոները, խարույկից հետո, տողանից առաջ բոլորը միասին գնահատում էին հերթապահ ջոկատի աշխատանքը՝ ինչպես անցավ օրը, ինչ նոր բան իմացանք, ինչ սովորեցինք, ինչով հարստացանք, ինչով ուրախացանք։

Եվ վայ այն ջոկատին, որ ընդհանուր դատաստանի առաջ կմնար ամոթով։

— Յո՞թը։ Յոթում խրոնիկական դմբոններ են։ Հունաստանի մայրաքաղաքի անունն էլ էին մոռացել, ո՛չ Աքիլլեսին հիշեցին, ո՛չ Ապոլոնին, ո՛չ...

Եվ ճամբարով մեկ թնդում էր յոթերորդ ջոկատի դառը համբավը։ Յոթերորդի երեխաները շրջում էին մթնած, տխուր և ընկեր Մուշեղից խնդրում թույլ տալ արտահերթ հերթապահություն։ Նոր քարտեզ, նոր երկիր, նոր գրքեր, նոր պատմություն... Մինչև փրկեին կորցրած անունը, մինչև նորից իրավունք ունենային լիաթոք ու երջանիկ ծիծաղելու...

* * *

Ամեն ինչ սկսվեց նրանից, որ ես անտառում մի ոզնի գտա և, ինչպես Մանուշն էր ասում, անտանելի հպարտացա։ Մանուշը, ճիշտն ասած, իրավացի էր։ Ես ինձ ուղղակի հերոս էի զգում։ Դե, ոզնին հրաշալի բան էր՝ փշոտ, գնդլիկ և բռնելուս հենց հաջորդ օրվանից իմ ձեռքից ուտելիք էր վերցնում։ Ո՛չ ոք ոզնի չէր բռնել, ո՛չ ոք չէր կարող պարծենալ, բացի ինձանից։ Իսկ իմ պարծենալը, ինչպես Մանուշն էր ասում, զարհուրելի էր։ Մանուշը սիրում էր այդպիսի բառեր՝ «անտանելի պարծենկոտ», «զարհուրելի գեղեցիկ», «սքանչելի աղուշ», «հանճարեղ դմբո» և այլն։ Եվ վա՛յ նրան, ով ընկներ Մանուշի «լեզվի տակ»։ Աչքդ էլ չէիր կարող թարթել, այնպես կներկեր, որ, ինչպես դարձյալ ինքն էր ասում, ուզում ես սպիրտով մաքրիր, մեկ է, բան դուրս չի գա։



Ես ոզնու պատճառով լպազացա, և Մանուշն իմ մասին ասաց. «Իդեալական աքլոր»։

Եվ հենց այդ օրերին հերթապահելու հերթը մեր ջոկատին հասավ։

— Ինդոնեզիա, — մի շաբաթ առաջ ասել էր ընկեր Մուշեղը, և բացի ինձնից մյուս բոլոր երեխաները կպել էին գործի։ Մեկը քարտեզն էր ուսումնասիրել, մեկը՝ պատմությունը, մեկը՝ ժողովրդի կյանքն ու սովորությունները...

Իսկ ես... Ես հպարտ-հպարտ կերակրում էի իմ ոզնուն և բոլորովին չէի մտահոգվում, մինչև չարաբաստիկ «Ինդոնեզիայի օրը»։

---

1) Այն ժամանակ ճամբարին կոչվում էր բազա, իսկ դրա ղեկավարը՝ բազավար։

Ճաշը պետք է մատուցվեր ինդոնեզական ձևով: Այդ բանն ինձ էին հանձնարարել: Մանուշն ու մյուսները քմծիծաղ տվեցին ու հեռացան: Ես մնացի մենակ: Էլ ուշ է, էլ գիրք չես կարդա: Ես հիշողությունս լարեցի ու... գտա:



Ինդոնեզիան աշխարհամաս է: (Շփոթել էի Ավստրալիայի հետ): Ինդոնեզիայում ապրում է մի զարմանալի կենդանի՝ կենգուրու անունով: Փորի վրա պարկ ունի, ձագերին դրա մեջ է պահում: Վազում է ցատկոտելով ու շատ էլ նման է մկան... Հետո Ինդոնեզիայում գորտ են ուտում: (Գիտեի, որ ինչ-որ տեղ իսկապես ուտում են):

Գնացի խոհարար քեռի Սերոբի մոտ: Սովորական հորթի մսից բոլորիս համար կոտլետներ էր պատրաստում և մակարոնով սուպ: Այդքանն ինձ բավական էր գլխիս զոռ տալու համար:

Ես վերցրի մի թուղթ, դրա վրա նկարեցի մի գորտ և մի մուկ: Մուկը փորի վրա պարկ ուներ, որի միջից երևում էր մի ուրիշ մկան գլուխ: Ես գոհ մնացի իմ աշխատանքից ու մնացած ժամանակս նվիրեցի իմ ոզնուն, որը վրանի անկյունում, արկղի մեջ խրթխրթացնում էր, կաղին էր ուտում:

Ճաշի ժամանակ, երբ բոլորն արդեն նստած էին սեղանների առաջ և, այն է, մեր ջոկատը քեռի Սերոբի հետ պիտի ուտելիքը բերեր, ես կանգնեցի ճաշարանի կենտրոնում և իմ նկարած մուկն ու գորտը ցույց տալով, լուրջ-լուրջ ասացի.

— Հարգելի հյուրեր, այսօր դուք ուտելու եք ինդոնեզական ճաշ: Ինդոնեզիան աշխարհամաս է: Այնտեղ ապրում է մի տեսակ մուկ՝ կենգուրու: Կենգուրուն ձագերին պահում է փորի վրա գտնվող պարկում: Այսօր մենք պատրաստել ենք մկան, այսինքն՝ կենգուրուի մսից կոտլետներ և մակարոնով սուպ՝ գորտի բուլյոնով:



Բոլորի դեմքերին զզվանքի արտահայտություն երևաց:

— Յա՜խկ, — լացակումած ասաց մի պստիկ աղջիկ:

Իսկ դռան մոտ հանկարծ թնդաց քեռի Սերոբի բամբ ձայնը.

— Ինչ ես հիմար-հիմար դուրս տալիս... Մուկ, կենգուրու: Հորթի միս է, տղերք, ազնիվ խոսք...

Բոլորը փռթկացրին: Ես չէի ուզում հանձնվել, երբ հանկարծ ընկեր Մուշեղն ասաց.

— Իսկ որտե՞ղ է Բատավիան, Արմեն:

— Բատավիան... Բատավիան... — կմկմացի ես, հետո միանգամից վրա տվի,— իհարկե Ինդոնեզիայում: Բատավիան մի մեծ լեռ է:

Ծիծաղում էին փորները բռնած, ամբողջ հինգ րոպե ծիծաղում էին անիրավները: Հետո Մանուշը արհամարհանքով, ավելի արհամարհանքով ասաց.

— Ախ, դու, կենգուրու...

Երեկոյան տողանից առաջ, ինձնից բացի, ջոկատի բոլոր մյուս երեխաներին գովեցին: Ո՜նց էլ սովորել էին այդքան բան... Ինդոնեզիա կղզիներ, Սումատրա, Բորնեո, Ցելեբես, Բալի... Արևադարձային պտուղներ՝ մանգո, բանան, անանաս... Աղջիկների հեզաճկուն պարը... Աքաղաղների մրցությունը հրապարակներում...

Միայն իմ մասին դառը, շատ դառը խոսքեր ասացին, իսկ անիրավ Մանուշը ծիծաղելով կնքեց.

— Հրաշալի կենգուրու, ամենակենգուրու...

Ես փախա վրան: Այնտեղ, անկյունի արկղի մեջ խրթխրթացնելով կաղին էր ուտում իմ ոզնին:

Նստեցի արկղի վրա և...



# ԱՆՏԱՌԻ ԳԻՐՔԸ

*ՍՈՒՐԵՆ ՄՈՒՐԱԴՅԱՆ*

Անտառը իր գիրքն է բացել
Ճերմակ-ճերմակ էջերով,
Ու քայլում է Տիգրան քեռին՝
Հրաշք գիրքը կարդալով։
Առաջին էջն է բացում նա.
Անտառն ո՞վ է զարդարել,
Ձյունով պատած թփերի մեջ
Նապաստակներն են պարել։
Իսկ գրքի այս փակված էջում
Արջն է մուշ-մուշ մրափել,
Աղվեսին ո՞վ չի ճանաչում,
Հազար կածան է չափել։
Պտտվել է գյուղի ծայրին,
Սոված հասել է անտառ,
Երազում է տեսնում հիմա
Ջաղ աքլորիկ, հավ ու թառ։
Այս ի՞նչ ձայն է. թա՛կ-թա՛կ, թա՛կ-թա՛կ։
Որսորդն ականջն է լարում.
Փայտփորիկն է շինում փչակ,
Որ չսառչի անտառում։
Վարժ կարդում է որսորդ քեռին
Ու կանգ առնում մի էջում.
Ահազանգ է գալիս հեռվից՝
Այդ իր Բողարն է հաչում։
Որսորդը ի՜նչ տեսնի հանկարծ.
Գայլն է ձորից բարձրանում՝
Փորը դատարկ. ուժը հատած,
Կորած գառ է որոնում։
Հրացանն է հանում ուսից.
Ծուխն է ամպի պես պատում...
Տիգրան քեռին գոհ իր որսից,
Օրվա դասն է ավարտում։

*Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ*

ՎԻԼԱՄ ՀՈՎՍԵՓՅԱՆ

# ՁՅՈՒՆ

Ամպ ու մշուշ, ձյուն ու ձմեռ,
Ձյո՛ւն է գալիս, փափուկ ձյուն,
Որ հանդ ու դաշտ, անտառ ու լեռ
Առնեն վերմակ, մտնեն քուն:

Ձյունը նստեց սար ու քարին,
Սառույց հագավ ժիր առուն,
Բայց իր դժվար ճանապարհին
Դարձյալ երգեց վառ գարուն:

Այծ ու ոչխար գոմը մտան,
Բույրն է անուշ չոր խոտի,
Իսկ մեր նախշուն կովը կթան
Էլ չի գնում արոտի:

Լռեց փոքրիկ պարտեզը մեր,
Հեռվում գետը մեր լռեց,
Միայն քամին այդ անհամբեր
Իր ցուրտ ճամփան չծռեց:

Ջուր է փչում քամին անզոր,
Որ չի լռում ու քնում,
Ես ավելի ժիր եմ այսօր,
Ուրախ դպրոց եմ գնում:

# ՆՈՐ ՏԱՐԻՆ

Նոր տարին եկավ
Խաղով ու տաղով
Ու մտավ մեր տուն
Ձնգուն ծիծաղով:
Այդ նա է մրգով
Ու ծափով եկել,
Կանաչ եղևնին
Նախշել ու ներկել:
Այդ նա է տանը
Այսքան լույս ցանել,
Լույսը չբացված
Մեզ ոտի հանել,
Աման ու բաժակ
Շարել է շարքով,
Մեզ բաժին բերել
Մայրիկի ձեռքով:
Նոր տարին եկավ
Ու մտավ մեր տուն,
Էլ զուր է քամին
Այդպես հոխորտում:

Ն.կ. ԱՇՈՏ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆԻ





ակար պապիկն արդեն իննսունի մոտ էր, երբ հանկարծ հիշեց իր մանկությունը, հիշեց, բարկացավ և առանց նախարանի բացականչեց.

— Տո՛, հիմա՛ր, քեզ հարցնում էին՝ «Մակար, երեքին գումարած երկու, ի՞նչ կանի», ինչու՞ չէիր ասում՝ հինգ, ինչու՞...—Նա այս խոսքերն արտասանեց բարձրաձայն, ավելի ճիշտ, գոռալով:—Ասեիր, էլի, ասեիր՝ հինգ:

Նա այդպես էլ թագավորական դպրոցը չավարտեց: Երրորդ դասարանից հեռացավ: «Ուզում չեմ»,— ասել էր ու գնացել, այն ժամանակ պարտադիր ուսում չկար: Ինքն ընտանիքի մեծն էր, մայրն ու հայրը մեռել էին, տանը հինգ փոքր երեխա էին մնացել: Մակարն արհեստի գնաց, պայտար դարձավ: Հիմա, երբ ամեն ինչ անցյալ էր, երբ այլևս ոչինչ մտաբերելու կարիք չկար, նա հանկարծ հիշեց իր մանկությունը, թագավորական դպրոցը, թվաբանության ուսուցչին և սաստիկ բարկացավ.

— Ինչու՞, ա՛յ մարդ, ինչու՞ չէիր սովորում, հի՛նգ ասեիր, է՛լի:

Հիմա էլ իր թոռն է իր նման, չի սովորում, թոռը, որի անունն ինքն է դրել: Իր անունն է դրել թոռան վրա, նա էլ է Մակար կոչվում՝ Մակար Մակարյան, ինքը կյանքում զուրկ չմնաց, սովորեց թվաբանությունը և ինքն էլ չիմացավ, թե ինչպես սովորեց, սովորեց առանց թվաբանության վարժապետի և թագավորական դպրոցի: Բայց այդ թվաբանությունը թվաբանություն չէր, այլ պարզ դրամական հաշիվներ, սովորական առուծախ, որ բավարարում էր իր կարիքները: Թվում էր, թե բարկանալու առիթ չուներ ծերունին և այն էլ այսքան ուշ, համարյա իննսուն տարեկան հասակում: Բայց առիթը կար:

— Ես գիտեմ, թե ինչու եմ բարկանում,—ասաց նա,—ես իմ չափով թվաբանությունը գիտեմ: Ինձ դրա-

# Որտեղ է ԹՎԱԲ գյուղը

ՎԱԼՏԵՐ ԱՐԱՄՅԱՆ

Նկ. ՌՈՒԲԵՆ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ

նից ավել հարկավոր չէ: Ես մտածում եմ թոռնիկիս և նրա ժառանգների մասին: Նայում եմ թոռնիկիս և զգում եմ, որ իմ պատճենն է, ամեն ինչով ես եմ, որ կամ: Երկու տարի է երրորդ դասարանումն է, թվաբանության պատճառով չեն փոխադրում, հարցնում են՝ «Երեքին գումարած երկու, ի՞նչ կանի, Մակար», ասում է՝ «Չգիտեմ»: Ինձանից հենց էդ պիտի ժառանգեր, հանդիմանում եմ, ասում է՝ «Բա ես քո թոռը չե՞մ, պապիկ ջան, ինչու՞ ես բարկանում»: Լավ, ի՞նչ անեմ, լռում եմ: Բայց որքան էլ որ լռեմ, էլի բարկանում եմ, վախենում եմ, որ այդ անտեր բթամտությունը ժառանգական հիվանդություն դառնա ու էլ մեր ցեղից չհեռանա, բա էն ժամանակ ի՞նչ անեմ: Այ, դրա համար էլ բարկանում, հերսոտում եմ:

Մեր այս զրույցից հետո, հաջորդ օրը Մակար պապիկը հագավ իր տոնական շորերը, մազերը սանրեց, մաքուր թաշկինակը ծոցը դրեց ու գնաց դպրոց: Դպրոցը նոր էր, հին, թագավորական դպրոցը վաղուցվանից չկար: Գնաց, ներկայացավ դպրոցի դիրեկտորին: Գլխարկը հանեց, ուղիղ կանգնեց և ցուցամատը տնկեց այնպես, ինչպես տնկում էին աշակերտները, երբ ուզում էին դաս պատասխանել:

— Վարժապետ, ես Մակարի պապիկն եմ,— ասաց նա:

Ո՞ր Մակարի:

Մակար Մակարյանի, երրորդ դասարանցի Մակարի:

Հա՞, դե լավ է, որ եկաք: Ձեր թոռնիկը բոլորովին չի սովորում: Երևի դպրոցից կհեռացնենք:

Մակար պապիկը ցնցվեց.

Ինչու՞, վարժապետ, ինչու՞ հեռացնեք: Որ հեռացնեք, դրանից ի՞նչ օգուտ, հո դրանով թվաբանություն չի՞ սովորելու:

Բա ի՞նչ անենք, չի սովորում:

Ինչը չի՞ սովորում, դուք սովորեցրեք, վարժապետ:

Ծույլ է, բութ է, ճար չկա:

— Որ հեռացնեք հա, դրանից ի՞նչ օգուտ:

Մենք հանգիստ կլինենք:

Պապիկը քթի տակ ժպտաց, ծալված ձախ ծունկը՛ն ուղղեց, հիմա էլ աջը ծալեց, որ մի քիչ հանգստանա, և ասաց.

Նրա պատճառած անհանգստությունն ի՞նչ պիտի լինի, երեխա է: Մի քիչ էլ որ մեծանա, կհասկանա, կսովորի: Հիմա ես եկել եմ խնդրելու, որ գոնե մի անգամ մի «երեք» դնեք նրան, մի հասարակ, մաշված «երեք»: Ինձ համար դրեք, վարժապետ, իմ խաթեր համար, այդ «երեքը» ես եմ ուզում:

Նախ, դուք նստեցեք, հայրիկ, ասաց դպրոցի դիրեկտորը: Մակար պապիկը զգուշությամբ նստեց աթոռի ծայրին և այդ համարեց հաջողության սկիզբը, ժպտաց և աչքերը կկոցեց.

Թագավորական դպրոցի թվաբանության վարժապետ պարոն Սիմյոնը մի քանի տեսակ «երկուսներ» ուներ՝ պոչավոր, կարճ պոչավոր, անպոչ և կեռապոչ,— ասաց նա: Երբ աշակերտը շատ թույլ էր, կեռապոչ «երկուս» էր դնում, երբ



թույլ էր՝ պոչավոր, երբ քիչ էր թույլ՝ կարճապոչ, իսկ եթե բավարարի նման թույլ էր՝ անպոչ «երկուս» էր դնում: Պատահում էր, որ ես անպոչ «երկուս» էլ էի ստանում, իմ ստացածը կեսապոչ «երկուսներ» էին լինում՝ ամենավատ «երկուսները»: Կյանքիս մեջ գոնե մի անգամ «հինգ» չստացա, դրա համար էլ գազազեցի ու էլ չսովորեցի: Մի «հինգն» ի՞նչ էր, որ չդրեց, որ դներ գուցե սիրտս տաքանար դպրոցի վրա, էլ չփախչեի: Հիմա, վարժապետ ջան, եկել եմ ու խնդրում եմ, որ թոռանս մի «հինգ» դնես, իմ խաթեր համար դնես, հենց իմացիր, թե ինձ մի լավություն ես անում ու ջուրը գցում: Ես իմ տետրակների մեջ մի «հինգ» չտեսա, թող գոնե թոռանս տետրակների մեջ տեսնեմ, չէ՞ որ նա իմ մասնիկն է, համարյա թե նա՝ ես եմ: Կարմիր թանաքով մի «հինգ» գիր, թող կորչի գնա: Ես էլ մարդ եմ, մի անգամ էլ ես եմ ուզում ուրախանալ:

Դպրոցի դիրեկտորը լսեց, մտածեց, հանգստացրեց պապիկին ու ճանապարհ դրեց: Պապիկն ուզում էր, որ վատ սովորելը ժառանգական հիվանդություն չդառնար հանկարծ ու չմնար իր սերունդների մեջ:

Մի երկու օր հետո թոռնիկն ուրախ-ուրախ տուն մտավ և տետրակը մեկնեց պապին:

Տուր, տուր տեսնեմ, որդիս, չլինի՞ թե «հինգ» ես ստացել,— ասաց նա՝ խորամանկորեն աչքերը կկոցելով:

Թոռնիկն ուրախ-ուրախ նայում էր պապին:

Դե, շատ լավ է, շատ ապրես, որդիս:

Տետրակի մեջ թվաբանության պարզ գործողությունների տակ կարմիր թանաքով մի մեծ «հինգ» էր դրված, այնքան էլ հաստ ու լիքը, որ Մակար պապն աչքերին չհավատաց: Համբուրեց թոռան ճակատը և դուրս գնաց տնից: Իսկ երեկոյան խմած տուն եկավ, «Առավոտ լուսո» էր երգում:

Ապրե՛ս, Մակար ջան, շա՛տ ապրես,— ասաց, գնաց մառանից մի մեծ մեխ բերեց, իր հին մուրճը հանեց, տետրակը վերցրեց, շուռ տվեց այնպես, որ «հինգի» էջը լավ բացվի, երեք և այդպես էլ տետրակը մեխեց իր սենյակի պատին:

Թող մնա, Մակար ջան, այս «հինգը» թող այստեղ մնա: Դու քեզ համար նոր «հինգներ» կբերես: Սա իմ հինգն է, թող ինձ մոտ էլ մնա, հենց իմանանք, թե ես եմ ստացել: Դու չես ստացել: Ի՞նչ կա որ:

Հաջորդ օրը փոքրիկ Մակարը մի «հինգ» էլ ստացավ, դարձյալ ուրախ տուն եկավ, որ պապին ցույց տա և ի՜նչ՝ պատին մեխած տետրակի վրա մի ձիու պայտ էր ավելացել:

Սա ի՞նչ է, պապի,— հարցրեց թոռնիկը:

— Դու այդ չես հասկանա, Մակար ջան, դու դրա հետ գործ չունես...

* * *

Ժամանակն անցավ, փոքրիկ Մակարը մեծ Մակար դարձավ, ես նրա հետ ծանոթացա և ինձ ասացին, թե պատին մեխած այն տետրակը մինչև հիմա էլ դեռ պատից չեն պոկել, պայտն էլ վրան է: Ես ուզեցի տեսնել:

Կտեսնենք,— ասաց Մակարը:

Բայց այդպես էլ չտեսա: Եվ չտեսնելուս պատճառն այն է, որ ես մոռացել էի հարցնել Մակարին, թե որտեղ է տեղի ունեցել այս դեպքը՝ ո՛ր գյուղում, ո՛ր քաղաքում: Հիմա էլ փնտրում եմ ու չեմ գտնում: Մակարը գնաց, և ես չիմացա, թե ուր գնաց, Մակար Մակարյան՝ թվաբ գյուղացի: Ով գիտե այդ գյուղի տեղը, թող հայտնի ինձ, միասին գնանք պատին մեխած տետրակը տեսնելու:

# ԻՄ ԹԻԶ ՈՒ ԿԵՍ ՁՄԵՌ ՊԱՊԻՆ

ՀԵՆՐԻԿ ԱՐԹԵՆՅԱՆ

Նկ. ՎԱԶՐԻԿ ԳԱԲՐԻԵԼՅԱՆԻ



Իմ պուճուրիկ Ձմեռ պապին
Ասես ծյունից է սպիտակ.
Կանգնել է նա՝ հենված պատին,
Կանգնա՜ծ-կանգնա՜ծ եղևնու տակ։

Իմ թիզ ու կես Ձմեռ պապին
Խաղալիք չէ մի հասարակ.
Պապիկ է նա հեքիաթային,
Մեկ էլ տեսար՝ առավ հասակ։

— Որտեղի՞ց ես եկել, ասա՛,
Իմ սիրելի Ձմեռ-պապի,
Ուղղաթիռով թեթևասահ
Նոր տարվա հետ իջար ամպի՞ց...






ԴԵՐՎԻԼԻ

Նկ. ԱՐՄԻՆԵ ԿԱԼԵՆՑԻ

*Ռյուգի բերած լուրը վտանգավոր էր։ Չնայած Ժերունին և եղբայրները կռվից չէին վախենում, բայց այս անգամ բավականին մտահոգվեցին։*

*— Վե՛ր կացեք, տղաներ,— կարգադրեց Տոհմավագը,— վերցրեք զենքերը և պատրաստվեք մարտնչելու,— բայց մի քիչ խորհելուց հետո դարձավ*

---

Սկիզբը՝ «Պիոներ» № № 8, 9, 10, 12

*դեպի Ռյուգը,— սպասիր, եթե քարանձավում թշնամիներ են ապրում, ապա ինչու՞ քեզ չհետապնդեցին։*

*Ռյուգը չպատասխանեց։ Եղբայրները ծերունու հրամանի համաձայն զինվեցին։ Մի քանի րոպե առաջվա խաղաղ ճանապարհորդները դարձան ռազմիկներ։*

*Եղբայրները շղթա կազմած առաջացան դեպի քարանձավ։ Երբ մոտեցան մուտքին, Գելը ձեռքի ջահը նետեց մութ քարայրից ներս։ Կրակը բոցավառվեց։ Այդ բավական էր, որ քարանձավից սուր կռինչով դուրս նետվեին սև գույնի բազմաթիվ էակներ։ Բայց դրանք ոչ թե մարդիկ էին, այլ... չղջիկներ։*

*Որսորդները մտան քարանձավ։ Ամբողջ հատակը ծածկված էր չղջիկների դիակներով։ Չնայած նրանք մարդկանց նմանահավոր չէին, բայց ոչ ոք Ռյուգին չմեղադրեց, որովհետև իսկական որսորդը ամբողջ կյանքում պարտավոր է ուշադիր և զգոն լինել։*

*Կրեկը քարանձավում խարույկ վառեց։ Տոհմավագը իրեն հատուկ հմտությամբ ուշի-ուշով զննեց ամեն անկյուն և հաստատեց, որ քարանձավը հիանալի ապաստարան է։*

*Վերջապես երկար թափառումներից ու տանջանքներից հետո նրանց հաջողվեց ապահով ու անուշ քնել։ Տոհմավագի հրամանով Կրակի մոտ առաջին գիշերը պատվավոր պահակ նշանակվեց փոքրիկ Կրեկը։*

*Մի անգամ Կրեկը զարմանալի հայտնագործություն կատարեց։ Գետափին չորացած և վաղուց տապալված ծառերի բներ կային։ Նրանք այնքան հաստ էին, որ տեղից-տեղ փոխադրելն անհնարին էր։ Սկզբից Ռյուգը քարե կացնով փորձեց գերանները ջարդել, բայց անհաջողության մատնվեց։ Կացինը կպչելով ամրակուռ գերաններին, փշուր-փշուր եղավ։ Կրեկը նկատել էր, որ շատ գազանիկներ ապահով թաքնվում են այդ գերանների տակ։ Եղբայրները երկար ու բարակ միտք արեցին ու հետո գտան, որ կարելի է գերաններն ուղղակի շուռ տալ։ Ափը թեք էր, և երբ հրեցին, գերանը գլորվեց ու ընկավ գետը։*

*Այդ ժամանակ Գելը գետում անհոգ լողանում էր. տեսնելով դեպի իրեն լո՛ղացող հսկա գերանը, ճարպկորեն բարձրացավ նրա վրա և հրաշք... Սկսեց ձեռքերով թիավարել և ծանր փայտին ուղղություն տալ դեպի ափ։*

*Գետափին կանգնած եղբայրները հիացել էին։ Նրանք գլորեցին ևս երկու գերան։ Կրեկի գլխում մի նոր միտք ծագեց.*

*— Եկեք միասին լողանանք,— բացականչեց նա։*

— Ես քիչ առաջ իջա Մարսից,
Մարսաշխարը ծովում մնաց,
Դե քեզ, Նազիկ, մի լավ մարզիր,
Դառնաս խիզախ աստղագնաց։

Ու սլանաս երկրից Նեպտուն,
Շատ կա այնտեղ Նեպտունաքար,
Ուր կշինես քեզ համար տուն,
Հեքիաթային մի նոր աշխարհ։

— Լավ ես ասում, Զմեռ պապի,
Թռիչքն հետո... թող մարզվեմ լուրջ։
Հիմա արի մեզ հետ պարի
Այս մեր նախշուն եղևնու շուրջ։

Գետափին երևաց ծերունի Տոմմավագը: Երեկն իր գյուղը հայտնեց նրան: Ծերունին կարգադրեց նոր գերաններ գլորել գետը, ապա հաստ պարաններով ամրացնել միմյանց:

Ոգևորված տղաները մի քանի գերան գլորեցին, ապա պարաններով կապեցին իրար, և ստացվեց ամուր մի լաստանավ:

Գետը ջրառատ էր և հոսում էր դեպի արևմուտք: Տոմմավագը որոշեց լաստանավով ճանապարհորդություն կատարել:

Մյուս օրը առավոտ շուտ ճանապարհորդները ձեռքերին առած փայտե երկարավուն ձողեր՝ բարձրացան լաստանավի վրա: Լաստանավը վաղօրոք ծածկել էին եղեգով, խնամքով դասավորել զենքերը և ուտելիքի պաշարը:

Ծերունի Տոմմավագը կանգնեց լաստանավի կենտրոնում, հանդիսավոր բարձրացրեց իր գավազանը: Տղաները ձողերը հենելով ափին, հրեցին, և լաստանավը խաղաղ օրորվելով լայնահուն գետի ալիքներում:

## Յոթերորդ գլուխ

## ԼՃԻ ԲՆԱԿԻՉՆԵՐԸ

Ճանապարհորդության վեցերորդ օրը նրանք նկատեցին լեռների մեջ ամփոփված կապույտ մի հարթություն: Տոմմավագը տղաներին բացատրեց, որ երևացող կապույտը կոչվում է լիճ: Հետաքրքրասեր Երեկը փորձեց հարցեր տալ, բայց երկարականջ Ոյուգը կտրեց նրա խոսքը.

— Աջափնյա անտառից տարօրինակ ձայներ են լսվում... Երևի եղնիկների հոտ է, կամ վերևից թափվող քարերի հնչեղ...

Նրանք լաստանավը ուղղեցին դեպի այն կողմը, որտեղից լսվում էին ձայները:

— Տոմմավագ, գետի մերձակայքում մարդիկ են ապրում,— ասաց Երեկը.— նրանք լողում են տարօրինակ լայն գերաններով, մեզ նկատել են ու նշաններ են անում:

— Դա այս կամ թարնիկեն իգոր է, պետք է ընդառաջ գնալ,— ասաց ծերունին:

Քիչ անց Տոմմավագի անճանաչ լաստանավը չորս կողմից շրջապատեցին ավելի գեղեցիկ ու հարմարավետ նավակներ: Տղաներն առաջին անգամ էին այդպիսի նավակներ տեսնում: Սրաքիթ և արագաշարժ նավակների վրա կանգնածները ձեռքերին երկական թիեր ունեին:

— Այս մարդիկ ինձնից խելացի են և բավականին խաղաղասեր,— բարձրաձայն կանչեց Տոմմավագը.— թող մեր կյանքը խնայեն և ապաստան տան:

Սրաքիթ ու գեղեցիկ նավակների վրա կանգնած որսորդները չհասկացան ծերունու լեզուն, բայց լաստանավի վրայի մարդկանց ջերմ ու շոյող աչքերը նրանց համոզեցին, որ թշնամական որևէ հարձակում չի լինելու: Եվ մինչ երկու կողմերը հետաքրքրված նայում ու ծանոթանում էին միմյանց, սրաքիթ նավակներն ու անճանաչ լաստանավը ընկան գետի ամենաարագընթաց հոսանքների մեջ և լողացին դեպի արևմուտք. սակայն գետի հորձանքը երկար չշեղեց սրաքիթ նավակների տերերին. նրանք ճարպկորեն թիավարելով, իրենց նավակներն ու լաստանավը մոտեցրին մոտակա ավազոտ ափին:

Այստեղ քարանձավի նախկին բնակիչների աչքերի առջև բացվեց հետաքրքիր մի պատկեր: Գետափին բազմաթիվ մարդիկ զբաղված էին տարօրինակ գործով: Նրանք իրենց ուսերից կախված պարկերը լցնում էին խճաքարերով ու ավազով, ապա մտնում էին գետափին և բեռնաթափում նավակների մեջ: Նրանցից մի քանիսը նկատեցին նորեկներին և մոտեցան:

Ծերունի Տոմմավագը նրանց գլխի մազերի զարդարանքներից ու ձեռքերի գավազաններից կռահեց, որ մոտեցողները ցեղի առաջնորդներն են, և իսկույն իր պարկից նվերներ հանեց ու մատուցեց նրանց:

Առաջնորդները բարեհաճ ժպտացին և նույնպես գլուխ խոնարհեցին: Տոմմավագի և ցեղապետների միջև սկսվեց ձեռքերի և ոտքերի շարժումներով մի երկար զրույց:

Տոմմավագը խնդրեց, որ իրեն և ջահել ուղեկիցներին ապաստարան տրամադրեն: Նա խոստացավ ազնվորեն ծառայել նրանց ցեղին: Ցեղապետները հասկացան, ապա ուշադիր զննեցին երեք եղբայրներին: Ճարպիկ և ամրակազմ տղաներն առաջին հայացքից բարի տպավորություն թողեցին նրանց վրա:

Այդ ժամանակ առաջնորդներին մոտեցավ մի երիտասարդ և հայտնեց, որ նավակները լրիվ բարձված են խճաքարով և ավազով:

Առաջնորդներից ամենամեծը ձեռքով նշան արեց, և նավակները շարժվեցին: Շուտով նրանք հասան գետաբերան, որից այն կողմ փռված էր կապույտ ու լայնարձակ լիճը:

Ափից բավական հեռու, ուղղակի լճի մեջ, բարձրադիր ցցերի վրա կանգնած էին կավահողով ծեփված և եղեգով ծածկված բազմաթիվ խրճիթներ: Վերջիններս միմյանց միանում էին փայտե կամրջակներով, որոնք ամրացված էին հաստաբուն գերաններին: Լճի զուլալ ջրերին նայելիս պարզ

նետում էին գերանների հիմքերը, որտեղ լցնում էին մեծ քանակությամբ խճաքար ու ավազ:

Այժմ միայն Տոհմավագը գլխի ընկավ, թե լճի բնակիչներն ինչ նպատակով էին այդքան շատ խճաքար և ավազ տեղափոխում: Նա իր մտքերը հայտնեց նաև զարմացած եղբայրներին:

— Եղեգնածածկ այս խրճիթներում կարելի է ապահով ապրել,— ասաց Ույուգը:

Գեյր և Գրեկը համաձայնեցին, որ լճի վրա ավելի անվտանգ ու հաճելի է ապրել, քան քարանձավում:

Բայց Գրեկը տխուր էր, նա երբեք հանգիստ ու անհոգ չէր կարող ապրել, քանի դեռ նրանից հեռու էին գտնվում սիրելի մայրը և քույրերը: Ինչքա՜ն նա երջանիկ կլիներ, եթե այդպիսի կանաչ խրճիթներում ապրեին նաև մյուս հարազատները:

* * *

Հաջորդ առավոտ, երբ նորեկները խորը քնից արթնանալով դուրս եկան տախտակամած, շատ զարմացան: Լճի բնակիչները վաղուց արդեն քրտնաջան աշխատում էին: Տղամարդիկ խիճ ու ավազ էին լցնում գյուղի հիմքերը ամրացնելու համար, իսկ կանայք հարթ սալաքարերից և տիղմից կառուցված օջախների վրա ձուկ ու միս էին խորովում:

Քիչ հետո ամբողջ համայնքը հավաքվեց նախաճաշի: Օջախների շուրջը տիրեց հանդիսավոր լռություն: Առաջնորդները սկսեցին բաժանել ուտելիքը: Նախաճաշի ժամանակ Գրեկը ավելի հետաքրքիր բան տեսավ: Օջախից քիչ հեռու հանգիստ նստել էին երկու երկարապոչ գազաններ: Զարմանալի էր, որ մարդկանցից ոչ մեկը նրանց վրա ուշադրություն չէր դարձնում: Գրեկը զգույշ տեղից վեր կացավ, վերցրեց թոկը և, ահա նա պետք է հարձակվեր երկարապոչերի վրա, երբ ցեղի առաջնորդը նկատեց ու կանգնեցրեց նրան:

Ծերունի Տոհմավագը նույնպես առաջին անգամ էր տեսնում նման բան, բայց ցեղի առաջնորդը համբերատար բացատրեց.

— Տարիներ առաջ, ձմեռային մի ցուրտ օր այս երկու երկարապոչները, սովատանջ, անտառից փախել և թափառում էին ճամբարի շրջակայքում: Որսորդներից մեկը ոսկորի կտոր գցեց, նրանք ըսկզբում փախեցան, իրենց հեռու պահեցին, բայց հետո փորսող տալով մոտեցան և... այլևս մեզնից չհեռացան: Երբ մեր որսորդները եղնիկ կամ վայրի թռչուններ են հետապնդում, երկարապոչները օգնում են նրանց, այնքան արագ ու երկար են վազում, որ ուղղակի զարմանալի է:

Տոհմավագը և եղբայրները ուշադիր նայեցին գազանիկներին և, հիացած նրանց արագաշարժությամբ ու բարեհոգությամբ, այլևս ձայն չհանեցին:

Խե՜ղճ նախամարդիկ, նրանք երբեք չէին կարծում, որ այդ երկու գազանիկները դառնալու են այն կենդանիների նախահայրերը, որոնք մշտապես պետք է ապրեին մարդկանց հետ:






ՊԵՐՃ ԶԵՅԹՈՒՆՑՅԱՆ

Նկ. ԳՐԻԳՈՐ ԽԱՆՋՅԱՆԻ

Ամեն երեկո, երբ գազանանոցը դատարկվում է մարդկանցից, երբ փակվում է հսկա դարբասը և մնում, է միայն ծեր պահակը, գազանները դուրս են գալիս վանդակներից։

Պոչն ուրախ շարժելով, հայտնվում է պահակի շունը, հանում բանալիները և բաց անում վանդակների դռները։ Ու՞մ մտքով կանցներ, որ այդ համեստ ու սուսուփուս շունը կարող էր մի օր բանալիները թոցնել գրասենյակից և գազաններին ազատ թողնել։ Եվ գիտե՞ք ով էր համոզել նրան։ Օ, մեզ լավ ծանոթ խորամանկ աղվեսը։ Նա ամեն օր ծեռ էր առնում շանը, ասում, որ նա դարձել է մարդկանց հլու ծառան։ Սկզբում շունը բանի տեղ չէր դնում, նա հո լա՞վ է ճանաչում աղվեսին։ Բայց հետո, անկախ իրենից, սկսեց մտածել այդ մասին։ Եվ, իսկապես՝ ի՞նչ էր ստանում իր հավատարմության դիմաց։ Ո՛չ մի քնքուշ խոսք, ո՛չ մի փաղաքշանք։ Մի կտոր ոսկոր։ Նրա արժանապատվությունը վիրավորվեց, խի՛ստ վիրավորվեց։ Եվ հիշեց, որ գազանները վերջ ի վերջո իր եղբայրներն են։

Բայց, այնուամենայնիվ, տատանվում էր խեղճ շունը։ Աղվեսն անմիջապես զգաց դա և դիմեց նոր խորամանկության։

— Ախր քեզ վրա ուշադրություն էլ չեն դարձնում,— ասաց նա,— իսկ մեզ դիտելու համար մինչև այստեղ են գալիս և դեռ փող են վճարում։

Շունը պատասխան չէր գտնում, աշխատում էր մի կերպ պաշտպանել մարդկանց, որոնց շատ էր սիրում, սակայն չէր կարողանում։

— Քեզ այնքան բանի տեղ չեն դնում, որ ազատ են թողել,— շարունակեց աղվեսը։— Իսկ դու մեզնից ինչո՞վ ես պակաս, դու էլ ես արժանի վանդակում ապրելու։

Շունը պոչը քաշեց, կախեց գլուխը ու լաց եղավ։

Եվ այդ օրվանից գազաններն ամեն երեկո ազատություն ստացան։

Պահակն, անշուշտ, գիտեր այդ։ Բայց ձայն չէր հանում։ Գիտեր նաև նախկին պահակը։ Սակայն երբ նա փորձեց տեսածը պատմել, գիտե՞ք ինչ պատահեց։ Նրան խենթ համարեցին ու հանեցին աշխատանքից։ Դե, դուք ասեք, նոր պահակին ի՞նչ է մնում անել, երձե ոչ լռել։

Գազանները դուրս թըռան վանդակներից և հավաքվեցին հրապարակում։ Նախ կատարվեց առաջին հանդիսավոր արարողությունը։ Երկու փղեր պահակին վանդակ տարան և փակեցին դուռը։ Այնուհետև բոլորը շարք կազմեցին, անցան այդ վանդակի առջևով։ Կուշտ-կուշտ ծիծաղեցին, մի լավ ուրախացան և վերադարձան հրապարակ։

Գրասենյակից բերեցին մի հին բազկաթոռ, որ արքայի գահն էր։ Եվ ի՞նչ, ո՞վ էր արքան։ Առյու՞ծը։ Բայց ինչու՞ առյուծը։ Այդ մարդիկ են հնարել, թե իբր առյուծը գազանների արքան է։ Գազանների արքան էր բարձրահասակ, սապատավոր ուղտը։

— Ո՛վ ազնիվ գազաններ, անտառի, անապատի և տափաստանի եղբայրներ, ո՞վ է ծեր մեջ ամենաիմաստունը և ամենաուժեղը։

— Ու՛ղտը, ու՛ղտը,— գոչեցին միաբերան։

— Ապրեք, շատ ապրեք։ Ես այդպես էլ գիտեի։ Դուք չէիք կարող չիմանալ ճշմարտությունը։

— Շնորհակալ ենք, տեր արքա։

— Ո՞վ է ծեր մեջ ամենագեղեցիկը։

— Ու՛ղտը, ու՛ղտը...

— Ապրեք։ Ես հավատում եմ ծեր ճաշակին։

— Շնորհակալ ենք, տեր արքա։

— Ո՞վ է...

— Ու՛ղտը, ու՛ղտը։

— Ապրեք։ Դուք անմիջապես կռահեցիք, թե ես ինչ հարց եմ տալու։ Իսկ ինչու՞ կռահեցիք։

— Իմաստուն են քո հարցերը, տեր արքա։

— Դե լավ, դուք ապացուցեցիք, որ արժանի եք ազատության։ Գնացեք, քեֆ արեք։

Արքան հորանջեց, փա-



կեց աչքերը և քուն մտավ: Հրապարակում սկըսեցին պարել: Եկավ էստրադային քառյակը, որի կազմի մեջ մտնում էին առյուծը, թութակը, ձին և ոնգեղջյուրը:

Պարում էին զույգ-զույգ: Փիղը և ընձուղտը, վագրը և ջայլամը: Արջն ու եղջերուն: Բոլորը, բոլորը:

Զմռռացան նաև փոքրիկներին: Նրանց համար կազմակերպվել էր մանկապարտեզ: Դաստիրակչուհին էր ընտրված գայլը:

Կար նաև բուժարան: Ու երկու բժիշկ: Սև և սպիտակ նապաստակները, որոնք քույր-եղբայր էին:

Բացվել էր ձրի բուֆետ: Գազանների մեջ կար այսպիսի մի պայման. ցերեկվա ուտելիքի մի մասը խնայել, որպեսզի երեկոյան հավաքեն և ընդհանուր սեղան բացեն:

— Ո՞վ է ձեր մեջ ամենաահարկու և ամենաազնիվ գազանը,— հանարծ կես քուն, կես արթուն հարցրեց արջան:

Նվագախումբը լռեց, պարերը դադարեցին, և բոլորը միաբերան գոչեցին.

— Ու՛ղտը, ո՛ւղտը...

— Դե լավ, որ այդպես է, քեֆ արեք:

Ու դարձյալ քուն մտավ:

Վրա հասավ խրախճանքի ամենահետաքրքիր մասը՝ մենամարտը, որ տեղի էր ունենում առաջին անգամ:

Կազմվեց մի մեծ շրջան, որտեղ հերթով երկու գազան պիտի ընկերական հանդիպում ունենային:



Առաջին զույգը սպիտակ արջն էր և փիղը:

— Կծել չկա,—ասաց փիղը:

— Քարով խփել չկա,—ասաց սպիտակ արջը:

Սկսվեց մենամարտը: Ի՛նչ մենամարտ էր: Ո՛նց էին կռվում: Արար աշխարհ դղրդում էր հսկաների ոտքերի տակ: Աղմուկը հասնում էր ամենուրեք, նույնիսկ մինչև հեռավոր անտառները, և գազանները ապշած ականջ էին դնում ու չէին հասկանում, թե ինչ է կատարվում: Չէին լսում միայն մարդիկ: Նրանք զանազան հաբեր էին կուլ տվել ու քնել:

Վերջապես սպիտակ արջը գետին ընկավ: Դատավորը՝ զեբրը, հաշվեց մինչև տասը ու, երբ արջը ոտքի չելավ, հաղթող հայտարարեց փղին:

Ամենից ավելի ուրախացան ծովացուլերը: Նըրանք ծափ էին տալիս և լեզուները հանած, ձեռ էին առնում սպիտակ արջին, որը ժամանակին նրանց թշնամի էր եղել: Արջը և փիղը իրար ձեռք սեղմեցին ու բաժանվեցին:

Հանկարծ մի չարագուշակ լռություն տիրեց հրապարակում: Բոլորն էլ քթները ցցեցին վեր, հոտոտեցին օդը և ինչ-որ վատ բան զգացին: Նըրանք վազեցին դեպի վանդակներից մեկը և տեսան աղվեսին, որ անմեղ աչքերով նրանց էր նայում:

— Ի՞նչ ես արել,— հարցրեց դաստիարակչուհի գայլը,—ու՞մ ես կերել:

— Ե՞ս...ես հիվանդ էի...բժիշկ կանչեցի...

— Իսկ ու՞ր են բժիշկները...Ու՞ր են նապաստակները:

— Սև և սպիտակ նապաստակնե՞րը...

Աղվեսը վախից կծկվեց:

— Սպանե՛լ, սպանե՛լ աղվեսին,—գոռացին այս ու այն կողմից:

— Դուք իրավունք չունեք ինքնադատաստան տեսնելու,—հանկարծ համարձակ ոտքի ելավ աղվեսը:—Ես լավ գիտեմ օրենքները:

Գազանները է՛լ ավելի զայրացան, որովհետև աղվեսը ճիշտ էր ասում:

— Դուք կարող եք ինձ միայն պատժել,—շարունակեց աղվեսը:—Եվ իրավացի կլինեք: Ես մեղավոր եմ: Ես ագահություն եմ արել: Ես արժանի եմ ձեր արհամարհանքին և ատելությանը:

Դա աղվեսի ամենամեծ խորամանկությունն էր: Ամենամեծը, որովհետև այդ խորամանկությունը հիմնված էր ճշմարտության ու անկեղծության վրա:

— Դե լավ, ի՞նչ անենք քեզ,—խեղճացան գազանները և խորհուրդ հարցրին հենց իրենից, աղվեսից:

— Ես ձեզ կհուշեմ, հանույքով կհուշեմ: Ինձ պետք է բանտարկել:

— Որտե՞ղ, ինչպե՞ս։

Շատ պարզ։ Վանդա ում։ Ու երեկոները բաց չթողնել։

Քիչ է, քիչ է այդ պատիժը։

— Մի՛ մոռացեք, որ ես եմ շանը համոզել և դուք հիմա ազատ եք շնորհիվ ինձ։

— Ճիշտ է,— համաձայնեցին գազանները։— Հաշվի առնելով աղվեսի մատուցած ծառայությունները, սահմանափակվել ցմահ բանտարկությամբ։

Աղվեսին ցմահ բանտարկեցին ու վերադարձան հրապարակ, շարունակելու մրցությունը։

Հաջորդ զույգը առյուծն էր ու եղջերուն։ Բոլորի հետաքրքրությունն ընկավ, որովհետև հենց սկզբից պարզ էր վախճանը։ Միայն զարմացան, թե այդ անխելք եղջերուն ինչու՞ համաձայնեց մասնակցել։

— Ուտել չկա,— ասաց եղջերուն։

— Ինձ ու՞մ տեղ ես դրել,— վիրավորվեց առյուծը։

Կռիվն սկսվեց։ Եվ ի՞նչ։ Պատկերացրեք, լավ էր կռվում եղջերուն։ Ազնիվ խոսք, լա՛վ էր կռվում։ Գազանների հետաքրքրությունը վերականգնվեց։ Անտառների եղջերուներն արդեն բնազդաբար ըսկըսել էին փախչել, թեև չէին հասկանում, թե ինչ է կատարվում։ Ու հանկարծ, նրանք կանգ առան, ոտքերը խփեցին գետնին, փորփրեցին հողը ու հանգստացան։ Եվ ա՛յ քեզ բան։ Անտառի



առյուծները մռնչացին, հետո ամոթահար փախան, թաքնվեցին թփերի մեջ։

Մենամարտը վերջացել էր ոչ-ոքի։

Գազանները ապշած էին, չէին հավատում իրենց աչքերին։ Ո՛նց թե, առյուծն ու եղջերուն կռվեն, և կռիվը վերջանա ոչ-ոքի՞։

— Չէ՛, այստեղ մի բան կա,— ասաց վայրի կատուն։— Կանչեք մեր իմաստուններին, թող խորհուրդ անեն և մեզ պատասխան տան, ո՞րն է գաղտնիքը։

Կանչեցին չորս իմաստուններին, շանը, ձիուն, կապիկին ու դելֆինին։ Նրանք առանձնացան և ժողով գումարեցին։

— Ո՞վ է ձեր մեջ ամենահարուստը և ամենամեծը,— հանկարծ քնի միջից հարցրեց արքան։

— Ու՛ղտը, ու՛ղտը,— շշուկով պատասխանեցին նրան։

Իմաստունները եկան և հայտնեցին իրենց որոշումը։

— Եղջերուն չպարտվեց, որովհետև չէր վախենում,— հայտարարեցին նրանք։

— Ի՞նչ, ի՞նչ։

— Վախ չկար, վա՛խ։

— Վա՞խ։

— Այո, վախն է ամենամեծ չարիքը։ Վախն է ամեն ինչ սպանում։ Վախն է մեր առաջին թշնամին։

— Ուրեմն, եթե նապաստակները չվախենային, աղվեսը չէ՞ր ուտի նրանց։

— Իհարկե չէր ուտի։

— Կորչի՛ վախը,— միաբերան գոռացին գազանները։

Մրցությունը կիսատ մնաց։ Բոլորն էլ զգացին, որ այլևս իմաստ չունի շարունակելը, որովհետև արդեն գաղտնիք չէր մնացել։

Եվ հանկարծ... Սա ի՞նչ բան է... Ահա և բժիշկները, սև ու սպիտակ նապաստակները...

— Ա՛յ նապաստակներ, դուք ո՞ղջ եք։

— Մե՞նք...

— Բա ձեզ չի՞ կերել աղվեսը։

— Չենք հիշում,— սփրթնեցին բժիշկները։— Մոռացել ենք...

Գազանները գնացին աղվեսի վանդակը։ Աղվեսը նեղացած շրջվեց ու չնայեց ընկերներին։

— Ա՛յ աղվես, բա դու չե՞ս կերել սև ու սպիտակ նապաստակներին։

— Ինձ ինչո՞ւ եք հարցնում, նրանց հարցրեք։

— Ինչու՞ մեզ չասացիր, որ դու անմեղ ես։

— Ես զայրացա... Վիրավորվեցի... Դուք խոցեցիք իմ սիրտը... Ես չեմ ուզում ձեզ տեսնել...

— Իսկ այն ի՞նչ վատ հոտ զգացինք մենք... Ինչու՞ մեզ թվաց, թե վատ բան է պատահել...

Ես իմ բաժինը չբերեցի բուֆետ, ինքս կերա...

— Հա՛, դե, դա ոչինչ... տիր մեզ, եղբայր՝ աղվես, ների՛ր...

Դուրս արի վանդակից, եղբայր աղվես...

Ջէ, այսօր չեմ դուրս գա: Ես իմ բաժինը կերել եմ: Ինձ մի օրվա բանտարկություն է հասնում:

Ա՛յ քեզ աղվես: Սա նրա խորամանկության գլուխ-գործոցն էր: Նա դիտավորյալ էր այդպես վարվել, դերասանություն էր արել, իմանալով որ առանց մատը մատին խփելու, վերջում հեշտությամբ մեծ օգուտ կստանա դրանից:

Գազանները շատ հուզվեցին: Իսկ սև ու սպիտակ նապաստակները մոտ եկան ու երախտագիտությամբ համբուրեցին աղվեսին:

Սկսեց լուսանալ:

Գազանները անաղմուկ մտան վանդակները: Շունը բանալիով կողպեց դռները և պահակի հետ միասին գնաց դեպի հսկա դարբասը:

Երևացին առաջին այցելուները, փոքրիկ տղաներ ու աղջիկներ, իրենց մայրիկների և հայրիկների ուղեկցությամբ: Բայց ինչու՞ էին գազանները քնել, սա ի՞նչ բան է, մի՞թե հետաքրքիր է քնած գազաններ դիտել: Հայրիկները և մայրիկները զայրանում էին և չէին հասկանում, որ գա-



զանները գիշերը չեն քնել և հիմա շա՛տ հոգնած են: Միայն երեխաներն էին անհոգ ժպտում, որովհետև կռահում էին ինչ-որ բան:

— Ո՞վ է ձեր մեջ ամենաիմաստունը, ամենաուժեղը, ամենախելացին, ամենահարուստը,—ինքն իրեն հարցրեց արքան: Եվ հենց ինքն էլ պատասխանեց.

— Ու՛ղտը, ու՛ղտը...

Իսկ մնացած գազանները խոր քուն էին մտել ու երազում տեսնում էին անուշ երեկոներ, որոնց վրա հասնելուն կարծես մնում էր մի ամբողջ հավիտենականություն:



# 60

Երեխաներ, դուք շատ լավ եք ճանաչում Վախթանգ Անանյանին: Երևի ձեզանից շատերը հանգստյան ժամանակ արդեն կարդում են սիրելի մանկագրի «Փիղը», «Ճայթանը», «Զանգը» և այլ բանաստեղծությունները: Վախթանգ Անանյանն արդեն 60 տարեկան է, բայց նա լի է ձեզ համար նորանոր գործեր ստեղծելու ցանկությամբ ու եռանդով: Եկեք նրա վաթսունամյակի կապակցությամբ նոր հաջողություններ ցանկանանք սիրելի գրողին:

## ԱՅՍՕՐ ՏՈՆ Է

Մեր սիրունիկ տոնածառ,
Լավն ես ձմեռ թե ամառ.
Փուշ ու փշիկ ցցել ես,
Դաշտ ու անտառ անցել ես.
Բայց աչերով լուսավոր
Զարմացել ես դու այսօր:
Թաթիկներդ՝ աջ ու ձախ,
Կատարդ՝ մինչ առաստաղ...
Լուսավոր ես ու խնդուն,
Շորորում ես, զնգզնգում:
Կուզե՞ս վեր կաց ու արի,
Մեզ պես թռիր ու պարիր:
Խոսեց ծառը մեր դալար.
Հանեք տարեք ինձ անտառ,
Մորս գիրկն եմ ուզում ես...
Վա՜յ, դու այնտեղ կտխրես:
Այստեղ տոն է, Նոր տարի.
Մեզ հետ երգիր ու պարիր:
Ձմեռ պապին հյուր կգա,
Ձյունե մուշտակ քեզ կտա:
Մեր զարունն ես ձմռան մեջ.
Կանաչ լույսն ես միշտ անշեջ:
Մեզ հետ երգիր ու պարիր...
Այսօր տոն է՝ Նոր տարի...




## ԵՐԿՎՈՐՅԱԿՆԵՐԸ

Մատտին և Բյորնը երկվորյակներ են: Նրանք ընդամենը ութ տարեկան են, բայց արդեն ինքնաթիռ են վարում: Այդ նրանց սովորեցրել է հայրը՝ կապիտան Տելինը, Սունդվալլի (Շվեդիա) օդաչուական դպրոցի ղեկավարը:

Եղբայրները համարյա ամեն օր սպորտային ոչ մեծ «Ցեսսնա» ինքնաթիռով վարժական թռիչք են կատարում: Նրանց ուղեկցում է հայրը, բայց միայն որպես ուղևոր: Տղաները ինքնուրույն ստարտ են վերցնում, գիտեն ինքնաթիռը վարելու բոլոր ձևերը: Նրանք միայն դժվարությամբ վայրէջք են կատարում:

Բայց կապիտան Տելինը ասում է. «Չի անցնի ևս երկու տարի, և տղաները դա էլ հեշտությամբ կըկատարեն»:

Երկվորյակները անհամբեր սպասում են այն օրվան, երբ իրենք կդառնան 18 տարեկան և կստանան իսկական օդաչուի կոչում:

## ՀԱՄԱՐՁԱԿ ՆԳՈՒԵՆԸ

Այն դպրոցը, որտեղ սովորում է փոքրիկ վիետնամուհի Նգուեն Տխի Կուանը, գտնվում է սահմանամերձ գետի՝ Բեն Հայի ափին: Գետը Հյուսիսային և Հարավային Վիետնամը բաժանում է իրարից: Նգուենը ապրում է Հյուսիսայինում: Թշնամին գետի վրա ամեն օր գնդացրային կրակ է բացում, անընդհատ թռչում են ամերիկյան ռմբակոծիչները: Նգուենը և նրա ընկերուհիները գյուղում զբաղեցնում են փոքրիկներին: Երեխաները ամենուրեք օգնում են մեծերին. բրինձ են ցանում և անասուններ արածեցնում: Ռմբապաստարաններ են փորում, կրակից փրկում են իրենց դասագրքերը և վերանորոգում արդեն քանի անգամ գնդակներից ծակծկված դպրոցի տանիքը: Ինչպես նրա բոլոր ընկերները, Նգուենը ևս վզկապ է կրում: Նա պիոներ է: Բայց, վզկապից բացի, նրա կրծքին փայլում է մարտական բարձր պարգևը՝ Հո Շի Մինի մեդալը: Նգուենը իրենց դպրոցում ամենախիզախն ու ամենահամարձակն է: Նա միայնակ բռնեց այն լրտեսին, որը ռումբը ձեռքին, լողում էր դեպի իրենց ափը:



## ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԷՍՏԱՖԵՏԱ

Սա, իհարկե, խաղ չէ: ԳԴՀ-ի երթևեկության պատանի կարգավորողները աշխատում են ազմկոտ քաղաքների խաչմերուկներում՝ իրենց դպրոցների մոտ:

Ահա թե ինչպիսի նամակ ստացան գերմանացի երեխաները Բուդապեշտից.

«ԳԴՀ-ի սիրելի տղաներ և աղջիկներ: Բուդապեշտի պիոներները նույնպես կարգավորում են երթևեկությունը փողոցներում: Մենք հպարտությամբ ենք կրում սպիտակ գլխարկ, ուսադիրներ, կարմիր թևակապեր «Rendező» մակագրությամբ: Մենք ոչ միայն օգնում ենք մեր փոքրիկներին, երբ նրանք առավոտյան անցնում են կամուրջով, այլև դասերից հետո հերթապահում ենք պահակակետերում:

Ձեզ, ինչպես լսել ենք, արգելված է կանգնեցնել տրանսպորտը: Իսկ մենք այդ իրավունքն ունենք. գրում ենք այն վարորդների անունները, որոնք չեն կատարում մեր դիտողություններն ու կարգադրությունները: Իհարկե, այդ շատ հազվադեպ է լինում, վարորդները հարգում են մեզ ինչպես իսկական կարգավորողներին:



*ՄԱՐԻԱ ՎԱՐՆԱԻ*»

## ԱՐՏԱՍՈՎՈՐ ԴԻՄԱԿԱՀԱՆԴԵՍ

Ինչեր ասեք, որ չեն կազմակերպում լեհ պիոներները՝ խարցերները: Լեհաստանի 1000-ամյակը տոնելու օրերին նրանք սովորական վրաններից տեղափոխվեցին և ապրեցին եղեգներից պատրաստված հյուղակներում և ավերակներում, որտեղ ինչ-որ ժամանակ ապրել են իրենց նախնիները: Երեկոյան խարույկի շուրջը հանկարծակի հայտնվեցին թագավորներ, իշխաններ, լեհական պատմության տարբեր ժամանակաշրջանների նշանավոր դեմքեր:

Պատմական շինությունները և հագուստները իրենք՝ խարցերներն էին պատրաստել:

Օրինակ. Ճլենսկում նրանք մի այնպիսի փայտե ամրոց էին կառուցել, որ արտասահմանյան զբոսաշրջիկները գալիս էին ամրոցը դիտելու: Հին հագուստները հատկապես հաճույքով էին զարդարել աղջիկները: Այդ օրը յուրաքանչյուրը ցանկացել էր թագուհի դառնալ. ինչո՞ւ չօգտվել այն առիթից, որ 1000 տարին մեկ անգամ է լինում: Այդ արտասովոր դիմակահանդեսները չափազանց հետաքրքիր և զվարճալի էին:

## ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ՏՐԱՄՎԱՅ

Վերջերս Տաշքենդի փողոցներում երևաց մի տրամվայ՝ արտասովոր մակագրությամբ՝ «Պատրաստված է այն մետաղի ջարդոնից, որ հավաքել են Լենինյան շրջանի 175-րդ դպրոցի պիոներները»:

Արկադի Գայդարի դրուժինայի պիոներները տրամվայի №1 պարկի բարեկամներն են: Ծանոթանալով «Շողացե՛ք, լենինյան աստղեր» մրցությանը, նրանք դուրս եկան լենինյան հերթափոխի: Եվ ահա, դրուժինայի խորհրդի որոշումից հետո, դպրոցի պատերին երևացին հայտարարություններ.

«Ուշադրությո՛ւն, պետք է հավաքել մետաղի ջարդոն՝ պիոներական տրամվայի համար»: Եվ առանց ուշացման սկսվեցին եռուն աշխատանքները: Դպրոցի բակում օրըստօրե ավելանում էին մետաղի ջարդոնի բլուրները:

Վերջապես եկավ սպասված օրը: Տրամվայի №1 պարկի բակում հանդիսավոր տոնական եղավ նոր տրամվայի առաջին երթաշրջանի առթիվ:

Պիոներները տրամվայի բանալին հանդիսավոր կերպով հանձնեցին՝ առաջին կարգի վարորդ Ա. Խարիտոնովային: Երկրորդ «գ» դասարանի աշակերտ Սերյոժա Կուտկովը կտրեց ժապավենը և, ինչպես ասում են, տան տերերը՝ պիոներները, լցվեցին վագոն:



Տրամվայը դուրս եկավ առաջին երթաշրջանի: Ամբողջ ճանապարհին հնչում էր երեխաների ուրախ երգը:

Մայրաքաղաքի 49-րդ դպրոցի պիոներները որոշեցին ընդօրինակել իրենց ընկերներին. շուտով Տաշքենդի փողոցներում կերևա նաև պիոներական ավտոբուս:

*ԳԵՈՐԳԻ ԱՎԱՆԵՍՈՎ*

# ԵՂԵՎՆԻՆԵՐԻ ԱՆՏԱՌՈՒՄ

*ԼՈՒՍԻԿ ԲԱՌՆԱԿՅԱՆ*

Եղևնիների անտառում իրարանցում էր:

— Ավտոմեքենա՜ն, ավտոմեքենան եկա՜վ,— գոռում էին ճանապարհի եզրին կանգնած փոքրիկ եղևնիները՝ վեր-վեր ցատկելով:

Ծեր եղևնիները նայում էին ավտոմեքենային ու լռում. դժվար էր կռահել, թե ինչ էին մտածում նրանք:

Բայց ամբողջ անտառն հուզված էր:

Դալար եղևնիները չէին թաքցնում իրենց հրճվանքը. մի ամբողջ շաբաթ նրանք անվերջ սպասում էին. և ահա նորից եկել էր բեռնատար ավտոմեքենան:

Դեկտեմբերի վերջին օրերն էին. եղյամի բարակ շերտը նստել էր ծառերի վարսերին՝ ասես արծաթյա գինդերով, մարգարտյա հուլունքներով զուգվել էին կողք-կողքի շարված եղևնիները:

— Մայրիկ,— փսփսում էր մի բոլորովին ջահել եղևնի,— եթե բեռնիչներն այս անգամ էլ ինձ չնկատեն, այս անգամ էլ...ես... ես...

Մայրը լուռ տմտմբացնում էր գլուխը և արցունքի կաթիլների նման ջուրը գլոր-գլոր կաթում էր ցած:

— Մայրիկ, ախր դու ոչինչ չգիտես,— շարունակում է աղջիկը,— քանի որ դու չես լսել Շրջող եղևնու պատմությունները:

Մայրը չէր սիրում այդ եղևնուն, որն իր ողջ կյանքն անց էր կացնում թափառելով. գնում էր գյուղից-գյուղ, քաղաքից-քաղաք և տարվա ընթացքում անտառ էր վերադառնում ընդամենը մի քանի օր:

— Մայրիկ, սիրելի մայրիկ, եթե մի անգամ դու լսես Շրջող եղևնուն, կիմանաս, թե ինչպիսի անհամբերությամբ են սպասում փոքրիկները: Ամեն երեկո նրանք հիշեցնում են իրենց ծնողներին, որ չմոռանան հաջորդ օրը եղևնի բերել՝ թարմ, ալար ճյուղերով, փարթամ... Դու չգիտես, թե նրանք ինչպես են զարդարում: Ասում են մարդկանց աչքերը շլանում են լույսերի առատությունից, երբ խավար սենյակում վառվում են եղևնիների վրա շարված գույնզգույն լամպերը: Մայրիկ, այնպե՜ս եմ ուզում, այնպե՜ս եմ ուզում...

Մայրն այլևս լսել չկարողացավ և շարժվեցին նրա կանաչ շուրթերը.

— Աղջիկս, մի՞թե աշխարհում ավելի հրաշալի տեղ կա, քան եղևնիների անտառը, մի նայիր շուրջդ, տես, որքա՜ն գեղեցիկ է: Ոչ մի տեղ երկինքը այնքան կապույտ չէ, որքան մեր գլխավերևում, ոչ մի տեղ արևն այնքան առատ չէ, որքան մեր անտառում, լուսինը ողջ գիշեր մեր գլխավերևից չի հեռանում:

— Մայրիկ, անտառում ամեն ինչ սովորական է, նույնը, միշտ նույնը, ուզում եմ նոր բան տեսնել, ավելի գեղեցիկ, ավելի լավ բան, ի՞նչ կա անտառում:

— Հող, ողջակս, հող...

Աղջիկը ծիծաղեց:

— Հող,— կրկնեց մայրն ավելի ուժգին,— մենք շատ ենք պարտական մայր հողին, ավելի քան անտառի որևէ բնակիչ: Տեսնո՞ւմ ես, ձմռան այս ցրտաշունչ օրերին որքա՜ն դալար, կանաչ են մեր ճյուղերը... Անտառում լույս կա, բաց երկինք և փոթորիկ:

— Որից այնպես դողո՞ւմ ենք բոլորս,— հարցրեց աղջիկը:

— Այո, երբ պայթում են սև ամպերը և սուրում են բաց կանաչավուն անտառի վրա, դողում ենք մենք, բայց չենք վախենում: Մի՞թե այդ պահերին դու չես լսում անտառի ահեղ հուզումը և պայքարի ելնելու տենչը: Մի՞թե դու մեզ հետ չես վայելում ահեղագոռ, անձրևից հետո թաց վարսերով արևին ժպտալու հաճույքը: Մենք հողածին ենք: Եվ ես կախարդված եմ հողի, լույսի, աստղերի, արևի, ջրի բարի խորհուրդով...

— Մայրի՛կ, ես ...— ինչ-որ բան էր ուզում ասել աղջիկը, բայց երկաթյա աղոցը խոխոաց հանկարծ նրա դալար ոտքերի վրա:

Մի քանի օր շարունակ մայր եղևնին իր ջահել ու անփորձ աղջկա մասին էր մտածում: Վերջապես լուր տարածվեց անտառում, որ քաղաքից վերադարձել է Չրջող եղևնին:

Նկ. ԿԱՐԵՆ ՄԱՐԲԱՍՅԱՆԻ

Մայր եղևնին շտապեց նրան տեսության:

— Բարի երեկո,— Չրջող եղևնու դռնից ներս մտնելով՝ ասաց ծեր եղևնին:

— Հազար բարի մեծ մայրիկին,— ծամոնը բերանի մի կողմից մյուսը քշելով պատասխանեց նա: Ապա նստարան առաջարկեց հյուրին և ակնոցների վերևից զննելով նրան հարցրեց.

— Աղջկանիցդ լու՞ր ես ուզում իմանալ:

Ծեր եղևնին գլխով արավ:

Չրջող եղևնին քթի տակ ժպտաց, երեք անգամ ծամոնը ճլթացնելով ծամեց ու պատասխանի փոխարեն մագնիտաֆոնը առաջ բերեց: Ծեր եղևնին նման բան առաջին անգամն էր տեսնում...

Հանկարծ սենյակը լցվեց ծանոթ ձայներով. կարծես գիշեր էր, և անտառն իր կանաչ եղևնիներով, թռչուններով, հոսող ջրերով համերգ էր տալիս: Բայց ահա սենյակը լցվեց երեխաներով, օ, որքան շա՜տ էին դրանք և ինչպե՜ս էին երգում, ինչպե՜ս էին փառաբանում եղևնուն: Մայր եղևնին, կարծես, նստած տեղում հալվում էր, բայց հրաշքը դեռ առջևում էր, քիչ անց նա լսեց իր դստեր ձայնը՝ նա էլ էր երգում, նա՛, իր դուստրը...

Ծեր եղևնու աչքերից երկու կաթիլ ուրախության արցունքներ ընկան, նրա սիրտը լցվեց մանուկների ուրախ աղմուկով և մի անասելի ցանկություն զգաց ընկնել այնտեղ և իր աչքերով տեսնել այդ ամենը, իր ականջներով լսել...

Բայց ինչպե՞ս, չէ՞ որ բեռնատար ավտոմեքենաները եղևնիների անտառ էին գալիս տարին մեկ անգամ, Նոր տարվա նախօրյակին:

Ծեր եղևնին ամեն օր վերհիշում էր տոնածառի շուրջը հավաքված երեխաների ուրախ երգերը, ուզում էր ինքն էլ երգել, բայց բառերը թռչում էին գլխից: Միայն պարզ ու մեկին, կարծես, իր սեփական աչքերով, նա տեսնում էր իր ջահել աղջկան՝ զուգված հազար ու մի գույներով, գիշեր-ցերեկ լույսերի մեջ ողողված:

Ծեր եղևնին բոլորովին ջահելանում էր, երբ մի պահ իրեն էր պատկերացնում հսկա դահլիճի մեջտեղում զուգված-զարդարված կանգնած, իսկ շուրջը իրեն հառած հազա՜ր-հազա՜ր մանկական սիրուն, փայլուն, ժպտացող աչքեր...






## ՍՊՈՒՆԳ

Սպունգը ո՛չ ուղեղ ունի, ո՛չ էլ նյարդեր։ Չունի նաև աչք, ականջ և այլ զգայարաններ։ Նա չունի թոքեր, ստամոքս, մկաններ և արյուն։

Բա ի՞նչ ունի։

Ունի միայն պարկանման ճարպացած մարմին և կմախքի փոխարեն՝ ասեղներ։ Նրա ասեղները կրային կամ եղջերային են և միահյուսվելով իրար՝ ցանց են կազմում։

Սպունգն ամբողջովին ծակծկված է ծակոտիներով։ Դրանք սպունգի բերաններն են։ Սպունգի բերանները երկնքի աստղերի չափ են՝ հաշվելը դժվար է։

Սպունգը չի կարող շարժվել։ Սպունգի առաջին հետազոտողները կարծում էին, թե դա բույս է։



Բայց սպունգը կենդանի է։ Նա մի կողմից ջուրը ներծծում է իր ծակոտիներով և մյուս կողմից դուրս է մղում։ Ջրի հետ սպունգի մեջ են մտնում ջրային մանր օրգանիզմները։ Սպունգի ներսում եղած բջիջները իրենց շոշափուկներով որսում են այդ մանր օրգանիզմները և մարսում։

Սպունգները շատ կենսունակ են։ Եթե մի սպունգ կտոր-կտոր անես և նորից գցես ջրի մեջ՝ ամեն մեկը կաճի և սպունգ կդառնա։ Եթե սպունգն այնպես մանրես, որ մաղի անցքերով բջիջները անցնեն, էլի նրա բոլոր բջիջները կապրեն։ Այդ բջիջները կմիանան իրար և նորից սպունգ կդառնան։

Եթե երկու տարբեր սպունգներ կտրատես, մանրես և իրար խառնելով լցնես ծովային ջրով լի ամանի մեջ, տեղի կունենա շատ հետաքրքիր մի բան՝ նրանցից յուրաքանչյուրի բջիջները կգտնեն իրար և վերջապես բոլորն իրար վրա հավաքվելով՝ կկազմեն նախկին երկու սպունգները։

Սպունգները հիմնականում ապրում են ծովերում։ Գունավորված են գրեթե բոլոր գույներով և տարբեր չափսեր ունեն։ Կան այնպիսիները, որ կաղինի չափ են, մի քանի տեսակներն էլ տակառի մեծություն ունեն։

Այն սպունգը, որով մենք լողանում ենք, Միջերկրական ծովից են հանում։ Ծովից հանելով, դրանք արևի տակ չորացնում են։ Սպունգը ոչնչանում է, մնում է կմախքը, որը փափուկ է մետաքսի նման, շատ լավ ջուր է ծծում և լավ էլ փրփուր է առաջացնում։

## ՆԻԱԳԱՐԱՆ ՎԵՐԱՆՈՐՈԳՎՈՒՄ Է

1966 թ. նոյեմբերի 11-ի կեսգիշերին սակրավորները միացրեցին հոսանքահատիչները և առավոտյան այնտեղ, ուր Նիագարայի վիթխարի ջրվեժն էր և յուրաքանչյուր վայրկյան անդունդ էր թափվում 6 հազար տոննա ջուր, միայն սակավաջուր վտակներ էին հոսում։

Բանը նրանումն է, որ բնության այդ հրաշալիքին սպառնում է լրիվ անհետանալու վտանգը։ Ջրվեժը, որ վաղուց ի վեր շահութաբեր ձեռնարկություն է դարձել ինչպես ամերիկացիների, այնպես էլ կանադացիների համար, սրընթաց նահանջում է։ Չափումները ցույց են տվել, որ յուրաքանչյուր տարի ջրվեժը, ողողելով հատակը, ետ է քաշվում մոտ մեկ մետր, իսկ իր գոյության ընթացքում նահանջել է 11 կիլոմետր։ 1931 թ. տեղի ունեցավ առաջին վթարը. ջարդվեց անդունդի վրա կախված հարթակը, որից թափվում էր ջրի ողջ զանգվածը։



Որպեսզի փրկեն այդ շահութաբեր հրաշալիքը, որոշում ընդունվեց ջրվեժը «վերանորոգել»։ Հիմնական ջրվեժից մեկ մղոն հեռավորության վրա կառուցեցին բետոնե վիթխարի դարբասներ, որոնց օգնությամբ նոյեմբերի 11-ի գիշերը ջուրն ամբողջովին ամերիկյան ափից տեղափոխեցին կանադական ափը։ Երկրաբանները ապարների փորձնական նմուշներ վերցրեցին, բուլդոզերները ջրվեժի ժամանակավոր վերանորոգում կատարեցին,

## ՄԵՔՍԻԿՈՅԻ ՀՈԳՍԵՐԸ

Մեքսիկայի մայրաքաղաք Մեխիկոյում հին շենքերը թեքվում են Պիզայի ընկնող աշտարակի նման, և հարկ է լինում քանդել դրանք: Մեկը մյուսի ետևից տագնապալի լուրեր են գալիս քաղաքի բոլոր ծայրերից: Սուրբ Մարիամի Նըշանավոր տաճարը «նստել է» և պատվել ճեղքերով: Կործանման եզրին են նաև ճարտարապետության այլ գլուխ-գործոցներ:



Քաղաքը իջնում է: Դեռևս 50-ական թվականների սկզբին, երբ քաղաքի կենտրոնական շրջանները տեղատարափ անձրևներից հետո անսպասելիորեն հեղեղվեցին, ստուգումներից պարզվեց, որ վերջին 20 տարում այդ շրջաններն իջել են ավելի քան 6 մետրով: Վերջին տարիներին իջեցման պրոցեսներն ավելի են արագացել:

Պատճառը ջրի պակասությունն է: Այն վայրը, ուր կանգնած է քաղաքը, ջրով ներծծված սպունգ է հիշեցնում. այն 85 տոկոսով կազմված է ջրից: Բավական է դուրս քաշել մեկ խոր. մ. ջուր, և գրեթե նույն ծավալի դատարկ տարածություն է առաջանում: Իսկ Մեխիկոյում այժմ ապրում է 6 միլիոն մարդ: Եվ որքան շատ ջուր են կլանում արտեզյան ջրհորները, այնքան արագ է իջնում քաղաքը:

Արդեն երևան են եկել յուրատեսակ ճարտարապետություն ունեցող շենքեր: Դրանք կանգնեցնում են պողպատե վիթխարի տուփերի վրա: Սեփական



ծանրության տակ տուփը խրըվում է հողի մեջ մինչև 5 հարկանի շենքի խորությամբ: Դրանից հետո նրա մեջ եղած ջուրը դուրս են քաշում: Տասնչորս հարկանի շենքի ծանրությունը հավասարապես բաշխվում է տուփի ամբողջ մակերեսի վրա: Տարին երկու անգամ և յուրաքանչյուր երկրաշարժից հետո ստուգում են, թե որչափո՞վ է ուղղահայաց շենքը: Անհրաժեշտության դեպքում պակասեցնում կամ ավելացնում են ջրի մակարդակը բաքերում, որոնք տեղավորված են տուփի մեջ, և վերականգնվում է շենքի ճիշտ դիրքը: Բայց արդյո՞ք հնարավոր է այդպես կառուցել քաղաքի բոլոր շենքերը:

Մեխիկոն փրկելու բազմաթիվ նախագծեր կան: Բայց դրանց իրականացման համար խոշոր միջոցներ են պահանջվում: Իսկ ժամանակը չի սպասում:

մի կողմ տարան տեսքը փչացնող սուր քարաժայռերը, մաքրեցին հատակը: 7 ժամ անց կարմիր հրթիռը ազդանշանեց, որ վերին դարբասները կրկին բաց են, և մեկ ժամ հետո Նիագարայի ջրվեժն «աշխատեց» նախկին ուժով:

Հետազոտության արդյունքները ներկայացվելու են հատուկ հանձնաժողովի, և նա էլ կվճռի, հնարավո՞ր է փրկել ջրվեժը, թե՞ ոչ:

## ԲԼՈՒՐԸ ՃԱՆԱՊԱՐՀՈՐԴ

Վերջերս Խոզենիցե գյուղից ոչ հեռու, Կրակովի մարզում գրանցվել է տարօրինակ մի երևույթ: Սովորական բլուրը պոկվել է տեղից ու մի քանի օր շարունակ առաջ է շարժվել՝ փշրելով ճանապարհին հանդիպած ծառերն ու էլեկտրահաղորդման սյուները:

Այդ տարօրինակ երևույթի պատճառը ստորերկրյա ջրերի մակերեսի բարձրացումն էր: Բլուրի ստորերկրյա պատվանդանը, որ նստած է եղել ընդերքի ջրատար շերտի վրա, ջրի մակերեսի հետ բարձրացել է վեր և որոշ ժամանակ լողացել, այսպես ասած «ջրային բարձի վրա»:

## ԴԵԼՖԻՆՆԵՐԸ ՀԱՑԱԴՈՒԼ ԵՆ ՀԱՅՏԱՐԱՐՈՒՄ

Ադրիատիկ ծովի ափին, գիտա-հետազոտական կայաններից մեկում ուսումնասիրում են դելֆինների կյանքը և նրանց վրա փորձեր են կատարում: Դելֆինները գիտնականներին թույլ են տալիս կատարել այն ամենը, ինչ ցանկանում են, այնքան ժամանակ, քանի դեռ չեն ձանձրացել ակվարիումում ապրելուց: Այդ ժամանակ նրանք հացադուլ են հայտարարում: Գիտնականները արդեն գիտեն, թե դա ինչ է նշանակում, և բաց են անում ծովի դարպասները: Դելֆինները առանց կասկածելու, որ մարդիկ այդպես կվարվեն, անշտապ լողում են դեպի ազատություն:



# ՃԱՆԱՊԱՐՀՈՐԴ ՄԵՂՈՒՆԵՐՆ ՈՒ ՊԱՏԱՆԻ ԲՆԱՍԵՐԸ

*ԹԱԴԵՎՈՍ ԹԱԴԵՎՈՍՅԱՆ*

Բաքու տանող գնացքը փնչալով ու մռնչալով անցնում էր Մեղրու կիրճով։ Գնացքի աջ և ձախ կողմերում պտղատու այգիների զմրուխտ կանաչն էր ձգվում։ Ինչպես ամենուրեք, գարունը սքանչելի է նաև հարավային Հայաստանի մրգաստաններում։

Վագոնի բաց լուսամուտից քամին ներս էր բերում ծաղկած այգիների արբեցուցիչ բուրմունքը՝ գարնան բուրմունքը. կանաչ խոտերի, ծաղիկների և գարնան արևից տաքացած հողի խառը բուրմունքը։

Երբ գնացքը կանգ առավ Մեղրիում, փոստատար վագոնին մոտեցավ պարկերով և ծանրոցների արկղերով բեռնված մի սայլակ։ Ամենից ուշագրավն այն էր, որ ծ՛նրոցների արկղերի հետ կային և արկղեր, որոնց վրա փակցված էին զգուշացնող պիտակներ՝ «Զգույշ, կյնդանի մեղուներ են»։

Ծանրոցները ընդունողը թևավոր ճանապարհորդների փեթակները դասավորում էր վագոնի ներսում, դռան մոտ, որպեսզի մեղուները մոտ լինեին թարմ օդի հոսանքին։

Արդեն վերջին արկղերն էին տեղավորում, երբ փորձեցի մոտենալ փոստատար վագոնի ուղեկցողին։ Ես անցյալից դառը փորձ ունեի կապված մեղուների հետ և ուզում էի նրան ասել, որ զգույշ լինի։ Սակայն մինչ ես կմոտենայի ուղեկցողին նա դուռը ծածկեց։ Մի րոպե հետո հնչեց գնացքի սուլոցը և ուղևորները նետվեցին դեպի իրենց վագոնները։

Ես նույնպես շտապեցի վագոն և բոլորովին մոռացա կենդանի մեղուներով լի ծանրոցները։

Հաջորդ կայարաններից մեկում, երբ գնացքը կանգ առավ, նորից փոստով բեռնված սայլակը մոտեցավ փոստատար վագոնին։ Բայց փոստատար վագոնի դռները չէին բացվում, թեև սայլապանը շարունակ թակում էր վագոնի փակ դռները։ Աղմուկին վրա հասավ կայարանապետը և փոստատար վագոնի լուսամուտից ներս նայելով սարսափահար ասաց.

— Ա՛յ քեզ խայտառակություն, մեղուները դուրս են եկել ծանրոցներից։

— Իսկ ի՞նչ կարելի է անել,— սկսեցին հարցնել այս ու այն կողմից։

Մինչ շարունակվում էին փոստատար վագոնը շրջապատող մարդկանց զարմացական խոսակցությունները և մինչ որևէ գործնական եզրակացության կգային, կայարանի հերթապահը տվեց գնացքը ճանապարհելու ազդանշանը։

Լսվեց շչակի սուլոցը և գնացքը տնքալով ու հառաչելով առաջ անցավ, կայարանում թողնելով ծանրոցներով բեռնված փոստատար սայլակը և շփոթված ու զարմացած մարդկանց։

Մի քանի րոպե անց բոլոր վագոններում տարածվեց ճանապարհորդ մեղուների փեթակներից դուրս գալու լուրը։

Գնացքում ամենուրեք խոսակցության առարկան մեղուներն էին։ Յուրաքանչյուր ուղևոր սկսում էր պատմել մեղուների հետ կապված որևէ պատմություն։

Զանազան գուշակություններ էին արվում այն մասին, թե ինչով կվերջանա պատմությունը փոստային վագոնում։

Ինչպես հետո պարզվեց, տեղի էր ունեցել հետևյալը։ Դեռևս նախորդ կայարանում մեքենավարը հանկարծակի արգելակում է գնացքը։ Ցնցումից վայր է ընկնում մեղուներով լի փեթակներից մեկը և ճեղքվում։ Մեղուները դուրս են թռչում փեթակից և սկսում են ճեղքեր որոնել վագոնից դուրս գալու համար։ Ո՞ր մեղուն կհամբերի փակ վագոնում, երբ դուրսը գարունն է փթթում և մեղվի համար իսկական քրտնաջան աշխատանքի ժամանակն է, մեղրահավաքի ժամանակը։

Դուրս գալով մութ արկղի խեղդոցից, մեղուները նետվում են դեպի լուսամուտը և դիպչելով ապակուն, թափվում են ցած ու չարացած շարունակում իրենց բզզոցը։ Եվ այսպես շարունակ։ Փոստատարները խուճապահար այս ու այն կողմ են



Նկ. ՌՈՒԲԵՆ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ

նետվում, իսկ մեղուները անխնա կերպով խայթում են նրանց, մինչև վերջապես նրանք, ինչ-որ լաթեր վրաները գցելով պառկում են հատակին և մնում անշարժ, սպասելով գնացքի տեղ հասնելուն։

Ողջ գնացքում խոսակցությունն այն մասին էր, թե ինչ ձևով պետք է հանգստացնել և հավաքել գազազած մեղուներին։

Օգնության հասավ մի պատանի, որն ասաց, թե

ինքը կարող է հավաքել և հանգստացնել մեղուներին:

Բոլորը զարմացած նայեցին 15-ամյա պատանուն: Մեր դիմաց կանգնածը ոչ մի բանով նման չէր փորձված մեղվաբույծի: Նա չէր կրում ո՛չ ակնոցներ և ո՛չ էլ սպիտակամորուք էր կամ ճաղատ: Բայց որովհետև մեղուներին կարգի հրավիրելու ուրիշ ցանկացողներ չկային, գնացքի պետը նրան հարցրեց.

— Լավ տղա, դու հո կատակ չե՞ս անում:

— Ինչու՞ կատակել, երբ այդպիսի վատ բան է կատարվում: Դպրոցում պատանի մեղվաբույծների խմբակում մեզ սովորեցրել են ինչպես համոզել մեղուներին. ես նրանց լեզուն հասկանում եմ, նրանք ինձ կլսեն, գնանք փորձենք:

Հաջորդ կանգառում պատանուն ուղեկցին գազազած մեղուներով լիքը վագոնը: Պատանին համարձակ ներս մտավ և փակեց դուռը: Կանգառը կարճատև էր և գնացքը նորից առաջ սլացավ: Մենք վերադարձանք մեր տեղերը, շարունակելով պատմել մեղուների վերաբերյալ զանազան պատմվածքներ:

Մեր գյուղում մի անգամ մեղուները խայթելով սպանեցին մի ձիու:

Դա ինչ է որ, ես կարդացել եմ, թե հին ժամանակներում ծովագնաց վաճառականները ծովահեն ավազակներից պաշտպանվել են մեղուներով: Նրանք իրենց հետ վերցնում էին կավե փոքրիկ փեթակներ և ծովահենների նավերին հանդիպելիս այդ փեթակները նետում էին նրանց նավերի վրա: Հասկանու՞մ եք, դա ուղղակի կենդանի կոտորակով լի մի ռումբ է, որ կա:

Վերջապես գնացքը կանգ առավ, բոլորս վազեցինք դեպի փոստատար վագոնը: Դուռը բացվեց և վագոնի մուտքին կանգնեց ժպտացող պատանի հերոսը.

— Ամեն բան կարգին է, մեղուները լսեցին ինձ և վերադարձան իրենց ճեղքված փեթակը:

Ի՞նչ էր արել պատանին իսկապես:

Մտնելով վագոն, նա փակել էր վագոնի բոլոր լուսամուտները: Մեղուները մթության մեջ խաղաղվել էին: Այնուհետև իր բաճկոնով ծածկել էր սեղանին դրած էլեկտրական լապտերը և լույսի մի նեղ փունջ ուղղել դեպի ընկած փեթակը: Բզզացող մեղուները սկսել էին թռչել դեպի լուսավորված փեթակը և հերթով ներս մտել: Պատանին փեթակի խուփը դրել էր տեղը և ամուր կապել արկղը:

Ամենքից ուշագրավն այդ պահին երկու փոստատարների տեսքն էր. նրանց դեմքը, պարանոցը և ձեռքերը այնպես էին փքվել, որ ծիծաղելի տեսք էին ստացել: Փոստատարներին դիմելով՝ ուղևորներից մեկն ասաց.

— Հույս կա, որ այսուհետև դուք լավ կհասկանաք, թե ինչ են նշանակում փեթակի վրա գրված բառերը. «Զգույշ, կենդանի մեղուներ են»:

Լույս է տեսնում 1925 թվականից



# ՊԻՈՆԵՐ

№ 1 հունվար 1968 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝ Նկ. ԱԼԲԵՐՏ ՅԱՐԱԼՅԱՆԻ

Գլխավոր խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝

ՉՈՒՐՄԱՆՅԱՆ Ռ., ԲԱՐԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱ...ՅԱՆ Խ., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղարվեստական խմբագիր)

„Пи ер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир банаки, № 41.

Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—68—16, 2—59—06:

ՎՖ 06466: Պատվեր՝ 1891: Տպաքանակ՝ 55000: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 10.I 1968 թ.: ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ: Երևան, Տերյան փ. № 91:

Գինը՝ 10 կ.






## ՄԱԹԵՄԱՏԻԿՈՍ ՈՐՄՆԱԴԻՐԸ

Մոտ 150 տարի սրանից առաջ Անգլիայի Բերինգամ քաղաքում ապրում էր Թոմաս Զրանտոն անունով մի տարօրինակ մարդ: Ամբողջ նահանգում նա մաթեմատիկայի համբավ ուներ: Սակայն այդ չէր խանգարում նրան՝ լինելու հմուտ ու բարեխիղճ քարտաշ-որմնադիր:

Մի անգամ Թոմաս Զրանտոնը քաղաքի բանուկ փողոցներից մեկի վրա կառուցում էր բազմահարկ մեծ տուն: Նա մի մեծ քար տաշեց, հարթեցրեց և նրա ողորկ երեսի վրա գրեց մի թվաբանական խնդիր: Նա այդ փորագրված քարը դրեց պատի մեջ: Երբ տունը պատրաստ էր, պատի վրա փորագրված անցուդարձ անողները կարդացին.

«Փնտրեցեք մի թիվ, որի թվանշանների գումարը հավասար է 45-ի, հանեք մի այլ թիվ, որի թվանշանների գումարը ևս հավասար է 45-ի: Խնդիրը ճիշտ լուծված կլինի միայն այն դեպքում, եթե այդ երկու թվերի տարբերության գումարը նույնպես հավասար լինի 45-ի:



Բերինգամ քաղաքի բնակիչները երկար ժամանակ գլուխ էին ջարդում այդ խնդրի լուծման համար և ի վերջո լուծեցին:

Փորձեցեք և դուք:

## ՈՒՄ ՔԱ՛ՆԻ ՍՈՒ՛ՆԿ ՀԱՍԱՎ.



Էդիկն ու Պետիկը գնացել էին անտառ սունկ հավաքելու: Երբ Էդիկը աչքաթող չաներ այն երեք լավ սունկը, որ հավաքեց Պետիկը, ապա նրա զամբյուղում կլինեին երեք անգամ շատ սունկ, քան հավաքել էր նրա ընկերը: Բայց երբ Էդիկը երկու սունկ պակաս գտներ, իսկ Պետիկը նույնքան ավել, ապա երկու անգամ շատ սունկ հավաքած կլինեին:

Փորձեք գտնել, թե տղաներից յուրաքանչյուրը քանի՞ սունկ հավաքեց:

## ԵՐՋԱՆԻԿ ՊԱՏԱՀԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ուսուցիչը գրատախտակի վրա մի թիվ գրեց և աշակերտներին պատվիրեց այն բաժանել չորսի, իսկ ստացվածին գումարել 15:

Խնդիրը հասարակ է, սակայն, լուծեք մտքում:

Մեզ հայտնի չէ, թե ինչի մասին էր այդ ժամանակ մտածում աշակերտը: Անուշադրության պատճառով նա շփոթեց խնդրի պայմանները: Հանձնարարված թիվը բաժանելու փոխարեն, նա բազմապատկեց չորսով, իսկ ստացված գումարից հանեց 15: Մի խոսքով, ամեն ինչ հակառակն արեց:

Ինչքա՞ն ստացար, — հարցրեց ուսուցիչը:

17, — պատասխանեց աշակերտը:

Ճիշտ է, — գոչեց ուսուցիչը, — ես նկատում եմ, որ դու առաջադիմել ես, դա խրախուսելի է:

Քանի որ խնդիրը հանձնարարված էր բանավոր, աշակերտներից և ոչ մեկը չիմացավ, թե ինչ կատարվեց: Առաջին հայացքից թվում է, թե աշակերտին պարզապես պատահականությունը փրկեց, որովհետև պատասխանը համընկավ ուսուցչի առաջարկած խնդրի պատասխանին: Բայց եկեք գտնենք, մի՞թե դա պատահականություն է: Փորձեցեք ինքներդ կազմել նույնպիսի խնդիր, բայց բոլորովին այլ թվերով, և դուք կհամոզվեք, որ պատասխանի մեջ ոչ մի պատահականություն չկա:

Առաջարկ՝ Հ. ՍՈՒՐԵՆԻ

ԹՎԱԲԱՆԱԿԱՆ ԽՆԴԻՐՆԵՐ. ԹՎԱԲԱՆԱԿԱՆ ԽՆԴԻՐՆԵՐ. ԹՎԱԲԱՆԱԿԱՆ ԽՆԴԻՐՆԵՐ.

ԹՎԱԲԱՆԱԿԱՆ ԽՆԴԻՐՆԵՐ. ԹՎԱԲԱՆԱԿԱՆ ԽՆԴԻՐՆԵՐ. ԹՎԱԲԱՆԱԿԱՆ ԽՆԴԻՐՆԵՐ.



«ԵՂՆԻԿՆ ԱՆՏԱՌՈՒՄ»

ՄԱՄԱՅԱՆ ՅՈՒՐԱ,
Բաղ. Սպիտակ, Մյասնիկյանի անվ. դպրոցի 4-րդ դաս. աշակերտ.

«ՁՄԵՌ»

ՈՍԿԱՆՅԱՆ ՆՈՆԱ
Երևան 6. տ.